# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ, ԹԻՒ 2 ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. ՓԵՏՐՈՒԱՐ, 1919 ՏԱՍԸ ՍԷՆԹ


ԱՌԱՋՆՈՐԴՈՂ

## Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆ

Վերջացող տարին չորս արիւնահեղ տարիներու շարանակութիւնն էր: Երկար տարիներէ ի վեր միայն Հայութեան կրած սոսկումն ու արհաւիրքը սփռեցաւ ու ծաւալեցաւ գրեթէ աշխարհիս ամեն կողմը ու մարդկութիւնը իր մորթին վրան զգալով Հայկական աղաղակին արդարացի ըլլալը, ցնցուեցաւ, շարժեցաւ ու չորս տարի մարտնչեցաւ ջախջախելու համար աշխարհի խաղաղութիւնը վրդովող վիշապին գլուխն ու ժանիքները, և յաջողեցաւ: Սակայն շատ սուղի գնուեցաւ այդ յաղթութիւնը: Տասը միլիոն կորիւն երիտասարդներ զոհուեցան, շատ մը երկիրներ մասամբ կամ ամբողջութեամբ, աւերակ դարձան: Միլիոնաւորներու հիւանդանոցներու մէջ խռնուած, մարդկութեան բեռ պիտի ըլլան դեռ բազում տարիներ: Այրուցուեր եղած գիւղեր ու քաղաքներ, գործարաններ ու եկեղեցիներ վերաշինելու համար անհաշիւ ուժեր պիտի սպառին: Ամեն տեղ, ամեն հասակէ ու սեռէ բիւրաւոր մարդկային էակներ կան անկարող գործելու և ինքզինքնին ապրեցնելու: Ներկայ տարին իր դրացի չորս տարիներուն շարանակութիւնը չէ այլ ևս, բայց անոնց թողած ցաւը դեռ կը կսկծայ մարդկային կեանքին մէջ. գոնէ կէս դար պէտք է որ չափով մը սպիանան անոնց պատճառած վէրքերը:

Այժմ աշխարհը ընդարձակ դաշտ մըն է դառ մարդասիրական կազմակերպութիւններու գործունէութեան համար, որոնց առաջինն է միջազգային Կարմիր Խաչը, որ նախախնամական օրհնութիւններ կը տարածէ ամենուրեք և արժանի է իրական քաջալերութեան: Ան չունի իրեն սեփական հայրենիք, լեզու ու ազգութիւն. կը հասնի հոն՝ ուր գիտէ թէ վիրաւոր մը, թշուառ մը կայ օգնութեան կարօտ:

Անկէ զատ, ամեն քաղաքակիրթ ազգ ունի իր ուրոյն մարդասիրական կազմակերպութիւնը, որով կը հոգայ ու կը խնամէ իր մէջ եղած թշուառութիւնները: Հայ ազգը ասոնցմէ ըլլալով, իր երկրին ամեն քաղաքներուն մէջ տեղական աղքատախնամ յանձնախումբեր ունենալէ զատ, ի վերջոյ աւելի ընդարձակ ու աւելի խորհրդաւոր ծրագրով մը հիմնեց համազգային մարդասիրական կազմակերպութիւն մը, անուանելով զայն Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութիւն, որ տակաւին իր անունը և նպատակը չէ կրցած արդարացնել և ասոր պատճառը մեր ազգութեան կը վերագրեմ ես: Հ. Բ. Ը. Միութիւնը հիմնուեցաւ ժամանակին երկու որոշ նպատակներու համար: Նախ՝ որպէսզի արտագաղթին առջև թումբ մը քաշուելով՝ Հայաստան չի պարպուի Հայերէ,

վասն զի տարբեր կերպով մենք Հայաստանի ազատութեան դատը ձեռքամնիս ջուրը ձգած կ'ըլլայինք: Առանց Հայու որո՞ւ համար պիտի պահպանէինք Ազատ Հայաստանը: Երկրորդ՝ որպէս զի հայ գիւղացին գլուխ ունենայ, վարժապետանոց ունենայ, տատ սերմնցու, լծկան եզներ և գործիքներ ունենայ: Ու հայրենի հողին հաւատարիմ մնացող այդ պատուական հայ գիւղացին, շինականը իր քաղաքացի եղբօր հետ ոչ միայն ապառապուս զրկեցաւ ամեն բանէ՝ այլ և հայկական ազատագրութեան ահաւոր գողգոթային վրայ իր կեանքն ալ զոհ տուաւ: Ինչպէս որ Քրիստոսի արիւնով աշխարհ ունեցաւ Աւետարանը, Քրիստոնէութիւնը, այնպէս ալ հայրենի հողին հաւատարիմ մնացող մեր մէկ միլիոնէ աւելի ազգայիններուն կրած տառապանքովն ու թափած արիւնովը պիտի ունենանք մեր Հայրենիքը, մեր Ազատութիւնը: Հ. Բ. Ը. Միութիւնը գրկարաց ընդառաջ կը վազէ անոնց մնացորդներուն, վիրաւորին դեղ ու դարման, քաղցածին՝ սնունդ, մերկին՝ հանդերձ, որբին՝ ուսում նարան կը հայթայթէ: Եթէ անունին ու անձերուն չես հաւատար, գոնէ այս գեղեցիկ գործերուն հաւատա՛ : Բայց դեռ շատեր տեղեկութիւն իսկ չունին անոր մասին. ոմանք անհոգ ու անտարբեր, «ինձմէ յետոյ ջրհեղեղ» տաղացուածքին կը հետեւին: Ուրիշներ կուսակցական կոյր կիրք, անկէց դուրս չեն ուզեր ճանչնալ ազգային ոեւէ հաստատութիւն, նոյն իսկ եկեղեցի: Այսպիսիք նոյն իսկ կը կարծեն թէ Հ. Բ. Ը. Միութիւնը իրենց հակառակ՝ գիրենք չէզոքացնելու համար հաստատուած ոյժ մըն է: «Թէև ինձ ոչ հաւատայք, սակայն գործոցն հաւատացէք» ըսաւ Քրիստոս իր հակառակորդներուն պէս խորհող խաստաւորս իր թշնամիներուն: Նոյնը կրնանք ըսել Հ. Բ. Ը. Միութեան դէմ խօսողներուն: Եթէ անոր հիմնադիրներուն ու անոր ծրագրին չէք հաւատար, եթէ զայն կառավարող վարչութիւններուն ու անոր հետեւող տասնեակ հազարներով պատուական ժողովուրդին չէք հաւատար, սակայն գործոցն հաւատացէք: Պաղտատի և Եգիպտոսի մէջ հաւաքուած տասնեակ հազարաւոր որբերուն համար հաստատուած դպրոցներուն ուրիշ շատեր ալ պիտի յաջորդեն վաղը և միւս օր վերածնեալ Հայրենիքի այլ և այլ կէտերուն մէջ: Անոնց հաւատացէք: Եւ անոնց կողքին կը խնամուին նաև այրիացեալ անտէր ու անպաշտպան թշուառ կիներու բանակներ. անոնց հաւատացէք: Նպաստընկալ աղքատներ չեն անոնք, ու Բարեգործականը նպաստաբաշխ աղքատախնամ չէ: Անոնք Հայրենիքի փրկութեան համար իրենց ծնողքը, իրենց ամուսինները, իրենց ամեն բաները կորսնցուցին. մենք ալ անոր փոխարէն մեր նիւթական ու բարոյական միջոցներով, շատ բնական պարտականութեան գիտակցութենէ առաջնորդուած, պիտի պաշտպանենք զանոնք, առաջիններուն ուսում գիտութիւն բաշխելով, երկրորդներուն գործ հայթայթելով, արհեստ սորվեցնելով ու իրենց աշխատութիւնը վարձատրելով: Ու Հ. Բ. Ը. Միութիւնը նուիրած է ինքզինքը մարդկային, Քրիստոնէական ու ազգային այդ սուրբ գործին: Մենք չենք զարմանար այնպիսիներուն վրայ, որոնք յանդգնին ընդդէմ խօսիլ Հ. Բ. Ը. Միութեան նման գերազանցօրէն արդիւնաւոր հաստատութեան, երբ անոնք անոր գեղեցիկ գաղափարականին ծնունդ տուող Աստուծոյ գոյութիւնն անգամ ուրացող կը համարին ու կ'ուրանան: «Զի ո՛չ է փշոյ քաղեն խաղող և ոչ ի տատասկէ թուզ»:

Զօրս տարիներէ ի վեր Հայրենիքի մէջ կատարուած խժդժութիւններէն ազատուած բախտաւոր Հայերս, եթէ ամբողջութեամբ և անկեղծ կերպով բոլորուած ըլլայինք Հ. Բ. Ը. Միութեան դրօշին շուրջ, ես վստահ եմ թէ մենք մեր խիղճը կը տապկուէինք և թէ աւելի չէր մնար օտարներուն պատեհութիւն տալ, որ անոնք նպաստ տանին մեր երկիրը ու գործեն ԻՐԵՆՑ ՈՒԶԱԾ ԿԵՐՊՈՎԸ: Սուրբագործուած այս երեք բաներուն զօրութիւնը կը հասկնա՞ս, բարեկամ:

Մենք միայն Հայաստան կոչուած հողին համար չէր որ կռուեցանք, մեր ժողովուրդը ստրկանալու համար չէր որ յանձնուաւ եղաւ և ատկից այդ խժդժութիւններուն, ու տառապանքի խաչը շալկած թափառեցաւ անապատներուն մէջ: Դուք

լու յիշեցէք Հայ բանաստեղծին սրտին մորմոքը· «Օտար աստղեր լոյս չունին, օտար ծաղիկ հոտ չունի» են։ Օտարին հացը կը յագեցնէ ստամոքսը, բայց միտքը միշտ քաղցած կը պահէ ազգային զգացումէ· օտարին հանդերձը կը ծածկէ ու տաք կը պահէ մարմինը, բայց սիրտը մերկ ու սառած կը պահէ հայեցի ամէն գիտելիքէ։

Ահա թէ ինչո՞ւ համար կարեւոր է, որ բոլորուինք Հ. Բ. Ը. Միութեան շուրջը ու զօրացնենք զայն։ Ահա թէ ինչո՞ւ Եկեղեցին թեւ ու թիկունք կը լլայ անոր և կը յանձնարարէ իր զաւակներուն սատել որ միանան անոր։ Որպէսզի կարելի եղածին չափ մեր զաւակները, մանաւանդ որբերը, քիչ կարօտ ըլլան օտար հացի, օտար հանդերձի և օտար կրթութեան, որպէս զի մեզմով մեծնան, մեզի համար մեծնան, և մերը՝ Ազգին ըլլան անոնք։

Եթէ կը հակառակիս մեր տուած այս բացատրութեան, պատրաստ ենք լսել քու փաստերդ· իսկ եթէ ոչ, եկուր անմիջապէս անդամագրուէ՛ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ։

Եւ երբ Եկեղեցին անվերապահօրէն կը սիրէ Հ. Բ. Ը. Միութիւնը, և կը ջանայ որ տարածուի անիկա բովանդակ Հայութեան մէջ, մի և նոյն ժամանակ կը փափաքի և կը յայտարարէ, որ անոր՝ Հ. Բ. Ը. Միութեան հովանաւորած ու խնամած որբերը ստանան նաև Քրիստոնէական ողջամիտ դաստիարակութիւն մը, Եկեղեցական և կառավարական հմուտ ու լուրջ դէմքեր ունենանք անոնցմէ։ Դաստիարակներ, ուսուցիչներ, գրական և գիտական հմտութեամբ մշակուած և ազգին նուիրուած ճշմարիտ Բարեգործականներ կ՚սպասէ անոնցմէ Եկեղեցին։



# ԿՐՕՆ

Ազգերը իրարմէ կը տարբերին երեք գլխաւոր երևոյթներով, որք են Հայրենիք, Լեզու և Կրօն։

Ազգ մը պէտք է ունենայ իր սեփական Հայրենիքը, ուրոյն լեզուն և կրօնը։

Ազգը բաղկացնող ցեղի մը սեփականութիւնն է Հայրենիքը։ Անոր համար ազգի մը անհատները կը ծնին իրենց հայրենիքին մէջ, կ'ապրին ու կը գործեն հոն և կը փափաքին, որ հոն ըլլայ նաև իրենց գերեզմանը։ Յակոբ Նահապետ, Յովսէփ, անշուշտ և ուրիշներ ալ, կտակ կը թողուն իրենց յաջորդներուն որ իրենց մարմինները չը թողուն Եգիպտոս, օտար հողերուն մէջ, այլ տանին իրենց Հայրենի երկիրը և հոն իրենց նախնեաց ոսկորներուն քով ամփոփեն։ Հայրենասիրական զգացումի վսեմ և օրինակելի բաղձանք մըն է ասիկա։

Երբ Հայրենիքի գոյութեան սպառնացող վըտանգ մը նշմարուի, անոր բոլոր բնակիչները կը միանան իսկոյն հեռացնելու համար զայն․ նոյն իսկ իրենց կեանքը կը զոհեն որ ապրի Հայրենիքը։

Ազգերու մէջ տարբերութիւն դնող երկրորդ պարագան է լեզուն։ Անյիշատակ ժամանակներէ ի վեր իւրաքանչիւր ազգ ունեցեր է իր սեփական լեզուն, և սիրեր է զայն հայրենիքին հաւասար սիրով, ու գուրգուրացեր է անոր վրայ։

Շատ մը ազգեր կոկեր, ճոխացուցեր, հարստացուցեր են իրենց լեզուն։ Ամերիկան իբր նոր յայտնուած աշխարհ մը, չունի իր յատուկ լեզուն և Անգլիերէն լեզուն կը գործածէ, բայց միանգամ որդեգրած ըլլալով այդ լեզուն, այսօր ունի իրեն ծաղկեալ գրականութիւն։

Մենք ալ ունինք մեր լեզուն ու ճոխ գրականութիւնը, մեր պանծալի գրաբարը և ճոխ աշխարհաբարը, որոնք օտարազգի ուսանողներէ հիացման առարկայ եղած են։ Երկար դարեր անհայրենիք մնացած Հայ ազգը, ողի ի բռին կ'աշխատի պահել իր ազգութիւնը։ Եւ այս օտարութեան մէջ ազգութիւն պահպանելու միակ միջոցն է լեզուին պահպանութիւնը։

Միայն այսչափ Հայրենիքի և Լեզուի մասին բաւէ վերջ, անցնինք Կրօնին, որուն վրայ կուզենք ծանրանալ։

Կրօնք չունեցող ազգ մը կամ ցեղ մը չի յիշուիր մարդկային պատմութեան մէջ։

Հայրենիքը բնակութեան համար է, լեզուն՝ խօսելու և գրելու համար։ Հարց կը ծագի թէ Կր-

# ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter

VOL. II, N. 2, FEB. 1919 PRICE 10 CENTS

րօնը ի՞նչ է և ի՞նչ նպատակի համար է։

Այս երկու հարցումներուն պատասխանելու համար շատ տեսակ ապացուցումներ կան։ Մենք կարճ կերպով ըսենք թէ Կրօն կըսուի այն բարւոք յարաբերութեան, որ մարդիկ կունենան իրենց ըմբռնած ու հաւատացած գերագոյն էակին հետ։ Եւ դարձեալ Կրօնը մարդիկ իրարու հետ ալ նոյնպէս բարւոք յարաբերելու և անոնց կենցաղավարութիւը ներդաշնակելու համար է։ Պարզենք։

Կրօնի բուն առարկան և անոր աղբիւրը Աստուած է, և որ կ՚արտայայտուի մարդոց միջոցաւ։ Երկիր կոչուած այս մոլորակին վրայ եթէ մարդը գոյութիւն չունենար, Աստուծոյ վրայ խորհող պիտի չըլլար։ Աստուած տեսնող մը չէ եղած Քրիստոսէ զատ. «զԱստուած ոչ ոք ետես, եթէ ոչ որ էջն յերկնից, որդին միածին». (Աւետարան)։

Մարդն է որ իրեն տրուած և հետզհետէ զարգացուցած բարձր իմացականութենէն առաջնորդուելով, ըմբռնեց տիեզերքի մէջ գերագոյն էակի մը գոյութիւնը, ու անոր անունը դրաւ Աստուած։

Այնքան փափուկ խնդիր մըն է ասիկա, որուն մօտենալու համար հարկ է ունենալ կրթուած համբերութիւն և մշակուած զգացումներ. որպէս զի ոչ թէ կոյր հետեւող մը ըլլաս կրօնի ցուցմունքներուն, այլ գիտակցութիւնը ունենաս ըմբռնածիդ։

Մարդը հետամուտ եղաւ, խուզարկեց, փնտռեց, իսկ Աստուած գտնուեցաւ, յայտնուեցաւ «Առանցպատճառի արդիւնք չըլլար»ի տրամաբանական սկզբունքէն առաջնորդուեցաւ մարդը։ Տեսաւ իր ոտքերուն ներքև մանկական խաղալիքի մը նման շարժող հողային գնդուածը հսկայ, իր բոլոր հրաշալիքներով, դիտեց իր գլխին վերև ցերեկին թաւալող արև լուսատուն մեծ, գիշերը լուսնափայլ և աստեղազարդ փառաւոր կամարը երկինքին, դիտեց այդ երկուքին՝ երկինքին ու երկրին մէջտեղ կեցող իրողինքը, որ իր ընդհանուր յօրինուածքով հրաշալի գլուխ գործոց մըն էր. ու մտածեց, որ բոլոր այս հսկայ և զարմանալի արդիւնքները չեն կրնար գոյութիւն ունենալ, առանց արտաքին պատճառի. հեղինակութիւն չի կրնար ըլլալ առանց հեղինակի, և տեսանելիքէն անցնելով անտեսանելիին, ընդունեց գոյութիւնը Աստուծոյ և յարաբերութեան մէջ մտաւ Անոր հետ։ Ահա թէ ինչ է կրօնը։ Հիմայ հասկնանք թէ ի՞նչ բանի համար է կրօնը։

Կրօնի բուն էութիւնով չհետաքրքրուող մարդիկ կը կարծեն թէ կարգ մը թանգրացած ծէսեր ու ձևակերպութիւններ կատարելու համար յօրինուած դրութիւն մըն է ան։ Ո՛չ։

Կրօնը անոր համար է որ մարդ հաւատայ թէ չի կրնար ըլլալ արդիւնք առանց պատճառի և թէ զինքը շրջապատող տիեզերքը, երկնային, երկրային և մարդկային բոլոր գոյութիւնները արդիւնք են պատճառի մը։ Դարձեալ այդ գերագոյն պատճառին արդիւնքն են անոնց մէջ տիրող կարգ ու կանոնները և հրաշալի ներդաշնակութիւնները։ Եւ պէտք է որ ընդունի և հաւատայ թէ այդ պատճառը վերջնական է, անկից անդին ո՛չ պատճառ կայ և ոչ արդիւնք։ Այդ միակ պատճառն է ամբողջ իմաստութիւն, համակ բարութիւն և բոլորովին ուժ։ Ան է որ կը կառավարէ, կը խնամէ և կը սիրէ բոլոր այդ գոյութիւնները, որոնց մէջ ամենէն բարձր աստիճանին վրայ կը գտնուի ինքը՝ ՄԱՐԴԸ, և իրեն միայն տրուած է հնարաւորութիւն կատարելագործուելու, և մարդ չի կրնար մշակել և իրականացնել այդ հնարաւորութիւնը առանց հաւատալու այդ գերագոյն պատճառին, առանց հաղորդակցութեան մէջ ըլլալու Անոր հետ։

Ուստի կըսենք Կրօնքը հաւատք է։

Ուրեմն քանի որ կրօնքի առարկան Աստուած է, որուն հետ կապուած է մարդ, հարկ է ճանչնալ զնա։

Արթուն և ուշիմ զաւակի մը մէջ հետաքրքրութիւն կը ծագի և կուզէ գիտնալ թէ որոնցմէ՞ սերած են իր ծնողքը, որո՞նք եղած են անոնց նախահայրերը են։ Ու կըսկսի այդ նպատակաւ հարցումներ ուղղել անոնց։ Այսպէս ալ խոհական և լուրջ մարդուն սրտին մէջ փափաք, մտքին մէջ հարց և հոգւոյն մէջ ծարաւ առաջ կուգայ և կուզէ գիտնալ թէ ո՞վ է Աստուած։ Ի՞նչ են անոր յատկութիւնները, են։ Ուրեմն կրօնքը ոչ միայն Հաւատք, այլ և ճանօթութիւն է։ «Այս են յաւիտենա-

կան կեանք զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած» (Աւետարան)։

Բաւական չէ Աստուծոյ մասին ունենալ միայն հաւատք և ծանօթութիւն։ Ըստ ամենայնի բարի և պարկեշտ զաւակ մը կատարեալ հնազանդութիւն ցոյց կուտայ իր ծնողաց, ու սիրելով անոնց կամքը կատարել, գործով ալ կ'արդարացնէ անոնց նկատմամբ ունեցած սէրն ու հնազանդութիւնը։

Ճիշդ այսպէս պէտք ըլլայ մարդոց յարաբերութիւնը այն Աստուծոյն հետ որուն ծանօթացած են ու կը հաւատան իր գոյութեան։

Այսպէս ուրեմն, կրօնը ոչ միայն հաւատք, ծանօթութիւն է, այլ և գործ, ապրելու որոշ ծրագիր մը։ Ու երբ մարդուն մէջ Աստուծոյ նկատմամբ հաւատքը, ծանօթութիւնը և գործը կը միանան, մարդ այն ատեն կրնայ կատարեալ կրօնաւոր, կրօնք ունեցող։ Բարոյական վսեմ և սուրբ սկզբունքներու հաւատացող և զայնս իր կեանքին մէջ գործնականապէս ի յայտ բերող։ Սիրէ զԱստուած բոլոր էութիւնովդ, սիրէ ընկերդ՝ մարդը՝ անձիդ պէս։ Այս հասկացողութեան մէջ կը խտանայ կրօնին բովանդակ վարդապետութիւնը։

Ահա այս կերպով ըմբռնուած կրօնն է, որ կը մաքրէ, կը յստակէ մարդուն միտքը ստորաքարշ միտումներէ, կը լուսաւորէ կը ճոխացնէ անոր իմացականութիւնը, տևական և հաճելի խաղաղութիւն մը կը պարգևէ սրտին, կը բիւրեղացնէ անոր կամքը և դէպի վեր, դէպի Աստուածային ազնուականութիւն կը բարձրացնէ զնա։

Քանի որ այսպէս կրօնը Աստուծոյ և ամեն բարի բաներու հետ հաղորդակցութեան մէջ կը դնէ զքեզ, պէտք է որ ան՝ կրօնը ըլլայ ուղղակի սրտէդ, լուսաւոր համոզումէդ։ Մանկութենէդ նուիրուէ անոր, ան կ'ուրախացնէ, երջանիկ կընէ զքեզ։ Կ'ազնուէ ու կը խանդավառէ երիտասարդութիւնդ, կը զօրացնէ ու կ'ամրապնդէ կատարելութիւնդ։ Դիւրատար կընէ, կը քաղցրացնէ ծերութեանդ օրերը և կըսփոփէ ու կը մխիթարէ երբ արդէն գերեզմանին դուռը հասած ես։

Առանց կրօնի շատ տխուր պիտի ըլլար մեր կեանքը։ Ուստի, «Յիշեա զու զՏէր Աստուած քո զամենայն աւուրս կենաց քոց և մի մեղանչիցես դու և կամ անցանիցես զպատուիրանօք նորա»։

Որ և է տեղ չենք կարդար, որ մարդ մը զղջացած ըլլայ կրօնքի ծառայելով, անոր ներշնչումներովը ապրելով բարի եղած ըլլալուն համար։ Ընդհակառակը, բոլոր անոնք որ չեն ուզած հաւատալ Աստուծոյ, չեն ուզած ծանօթանալ Անոր հետ, չեն ուզած յարաբերութեան մէջ ըլլալ Անոր հետ և եղած անկրօն, զղջացած են ի վերջոյ։

---

## Հ Ա Ն Գ Ի Ս Տ

## ԱՄԵՆ. Տ. Տ. ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔԵՊՍ. ՕՐՄԱՆԵԱՆԻ

Փարիզի և Եգիպտոսի թերթերուն հետևելով, Ամերիկայի հայ թերթերէն ոմանք ծանուցին, թէ Օրմանեան Սրբազան վախճանած է Կ. Պոլսոյ մէջ։

Օրմանեան Սրբազան բնիկ Կ. Պոլսեցի է. ծնած է Բերա 1841 Փետր. 11-24։ Ըսել է, որ հռչակաւոր Եկեղեցականը վախճանած է 77 տարեկան, իր ծերութեան լի օրերուն մէջ։

Հանգուցեալը, հակառակ իր յառաջացեալ տարիքին, կորովի էր, ընդունակ աշխատելու և շատ հաւանական է, որ քաղաքական վերջին դէպքերու հետևանքով հոգեկան և ֆիզիքական տառապանքներու տակ ընկճած ըլլայ։

Օրմանեան Սրբազան շատ գործունեայ կեանք մը ունեցած է և այդ կեանքը կապուած է մեր Ազգին մէջ շարք մը նշանաւոր դէպքերու։

Գիտուն անձնաւորութիւն մըն էր ան. հիմնովին և լիովին գիտէր քանի մը եւրոպական լեզուներ։ Ծառայած է իր ազգին իբրև ուսուցիչ, իբրև Քարոզիչ, իբրև Առաջնորդ, իբրև Պատրիարք, իբրև Հեղինակ և Հրապարակագիր։

Մինչև 1879 թուականը իր ծառայութեան գետինը եղած է Հայ-Կաթոլիկ եկեղեցին։ Բայց այդ ասպարէզը շատ նեղ էր իր ազատական և ազգային ձգտումներուն համար։ Վարժապետեան Ներսէս Պատրիարք մօտէն կը ճանչնար Հ. Մաղաքիա Օրմանեանը, և հետևաբար բացաւ երիտասարդ և եռանդուն եկեղեցականին առջև Հայաստանեայց Եկեղեցւոյ դռները։ Եւ 1879 Հոկտ. 28ին իր ձեռքովն իսկ Ծայրագոյն Վարդապետութեան գաւազանը տուաւ Օրմանեանին, և կարճոյ պէս շատ կարևոր թեմի մը առաջնորդ եղաւ ան 1880 Ապրիլին սկիզբը։ 1886ին Մակար Կաթողիկոսէն Եպիսկոպոս ձեռնադրուեցաւ. իսկ 1887ին, նոյն Կաթողիկոսին կողմէն, հրաւիրուեցաւ Ս. Էջմիածին, Գէորգեան Ճեմարանի մէջ Աստուածաբանութիւն դասախօսելու համար։

Քաղաքական պատճառներով Օրմանեան տարի մը ետքը ստիպուեցաւ մեկնիլ Էջմիածինէն և եկաւ Կ. Պոլիս, ուր մնաց մինչև 1889, երբ կանչուեցաւ Արմաշի Դպրավանուց Առաջնորդութեան: 1896 Նոյ. 6ին ընտրուեցաւ Պատրիարք Թուրքիոյ Հայոց, և այդ պաշտօնը վարեց մինչև 1908, Օսմանեան Սահմանադրութեան տիրայուչ թուականը, յորում ստիպուեցաւ հրաժարիլ:

1908-1913՝ գրական աշխատութեան նուիրեց ինքզինքը և գրեց իր ամենէն գլխաւոր երեք գիրքերը: Ասոնց մէկն է Հայաստանեայց Եկեղեցին, զոր գրեց Ֆրանսերէն, ետքը թարգմանեց հայերէնի, և հայերէնը կարճ ժամանակի մէջ արժանացաւ երկրորդ տպագրութեան: Անգլիերէնի և Ռուսերէնի ալ թարգմանուեցաւ այս գործը և լաւ ընդունելութիւն գտաւ Եւրոպայի և Ամերիկայի մէջ:

Միւս երկու գիրքերն են. Համապատում և Ազգապատում:

Համապատում՝ Ջորս Աւետարաններու միաձոյլ մէկ նոր խմբագրութիւնն է, ժամանակագրական ծրագրով մը: Այս գործը արդիւնք է երկար ժամանակներու ուսումնասիրութեան, և կ'արժէ որ ամէն հայ կարդայ զայն:

Ազգապատումը մեր Հայաստանեայց Եկեղեցւոյ Պատմութիւնն է, գրուած հետաքրքրական ծրագրով մը, սկիզբէն մինչև 1808:

Երկու գիրքերն ալ կոթողներն են իր հմտութեան, թէ՛ իրենց բովանդակութեամբ և թէ՛ իրենց ծաւալով:

Օրմանեան Սրբազանի կեանքը անդուլ գործունէութիւն մը եղած է ծայրէ ի ծայր: Այնպէս որ իր ծերութեան մէջ, այդ խոշոր գիրքերը գրելէ և հրատարակելէ ետքը, Երուսաղէմ ղրկուեցաւ, Ս. Յակոբայ Վանքը բարեկարգելու պաշտօնով:

Երուսաղէմ հասնելէ ետքը, գործերը քննեց, ուսումնասիրեց և տեղեկագիր մը հրատարակեց:

Այդ միջոցին պատերազմը պայթեցաւ: Յետոյ Երուսաղէմ գրաւուեցաւ Անգլիական բանակին կողմէն և ինքն՝ Կիլիկիոյ Կաթողիկոսին հետ տարուեցաւ Շամ, և անկից կարող եղաւ երթալ Կ. Պոլիս, ուր կը վախճանի քանի մը ամիս առաջ:

Ազգային-քաղաքական տեսակէտով իր ամէնէն ուշագրաւ գործունէութիւնը ցոյց տուած է Պատրիարքութեան մէջ, Սուլթան Համիտի բռնապետութեան տակ: Եւ իր այս գործունէութիւնն է, որ Թուրքիոյ մէջ գնահատուեցաւ իբրև յաջողութիւն. իսկ ընդհակառակն չգնահատուեցաւ արտասահմանի յեղափոխական շրջանակներու մէջ

Ազգային ողջմտութեան հանդէպ՝ Օրմանեան է՛ և կը մնայ պատկառելի գործիչ մը, հաւատարիմ Հայութեան աւանդութիւններուն:

Օրմանեան, իբրև անձնաւորութիւն և մեծ անձնաւորութիւն, անշուշտ ունեցաւ իր սխալները և թերութիւնները, որոնք յաւէտ պիտի պահեն իրենց անհատական նկարագիրը. բայց իր առաւելութիւնները կապուած են Ազգային կեանքի հետ և ծառայութեան մեծութիւնները այնքան ճնշող են, որ ատոնց քով կ'անհետին իր ակարութիւնները: Յարգանք իր յիշատակին: Բ. Ե.

## ԵԿԵՂԵՑՒՈՅ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ

Յունուար 26ին Եկեղեցւոյ մէջ տեղի ունեցաւ տարեկան անդամական ժողովը, նախագահութեամբ Հոգեւոր Հովուին: Կ'ատենապետէր Տիար Յ. Նշկեան: Ներկայ էր նաև Գեր. Տ. Բարգէն Եպիսկոպոս: Ատենադպիրը՝ Պ. Վ. Նշկեան կարդաց նախորդ նիստի արձանագրութիւնը որ վաւերացաւ: Օրակարգի մէջ նշանակուած խնդիրները մի առ մի խորհրդակցութեան ենթարկուելով, յարմար որոշումներ տրուեցան: Հոգեւոր Հովուին հրաժարականը չընդունուեցաւ: Ցաւալի էր որ Եկեղեցւոյ ապակիներուն վրայ նուիրատուութեանց փոխարէն յիշատակարան գրելու խնդիրը վերջին պահուն դարձեալ վիճաբանութեան առարկայ ըլլալով, երկար ժամանակ առաւ՝ առանց որոշ եզրակացութեան մը յանգելու. որովհետև այս ժողովին իրաւասութեանէն վեր խնդիր մըն էր ան:

Ընտրութեանց արդիւնքը հետևեալն է.

Դիւան Ընդհանուր ժողովոյ, Հ. Էկինեան՝ Ատենապետ, Բիւզանդ Սարգիսեան՝ Ատենադպիր:

Հոգաբարձութեան դադարեալ չորս անդամոց տեղ ընտրուեցան՝ Տիարք՝ Փօլոս Շահպազեան, Յարութիւն Ուբոտիկեան, Փօլոս Գույումճեան և Յովհաննէս Էլմասեան: Նախորդ տարիէն մնացող երեք անդամներն են. Տիարք Մինաս Խոլլիկեան, Ադամ Պետոյեան և Մամբրէ Գորգմազեան:

Հետևեալը ամփոփումն է Հոգաբարձութեան կողմանէ Ընդհ. Ժողովոյ մէջ կարդացուած տեղեկագրին.

« . . . . Եօթն անդամներէ բաղկացեալ Հոգաբարձութիւնս տարի մը առաջ, իր ընտրութենէն անմիջապէս վերջը, կազմակերպուելով գործի ձեռնարկեց և մինչև վերջը իր կազմը և ամբողջութիւնը պահեց անփոփոխ: Հոգաբարձութիւնը այս

շրջանի մէջ եւ տարբեր ժողովրդական դաշտահանդէս մը, որ այս անգամ եւս խիստ փայլուն յաջողութեամբ անցաւ: Դաշտահանդէսը տեղի ունեցաւ Յունիս 30ին ի Քինկսպըրկ, ուր Սան Ոգին դաշտի ամէն կողմերէն եկած էր մեծ բազմութիւն մը: Նոյն օրը հօն ժամերգութիւն կատարուելով քարոզ խօսեցաւ և 30 հատ ալ երախայ մկրտեց Եկեղեցւոյս Հովիւը: Նորութիւն ըլլալով՝ պատուաւորութեան հրաւէր մը տրուեցաւ քաղաքիս և շրջակայից Ամերիկեան դպրոցներէն ընթացաւարտ բոլոր Հայ աշակերտաց համար:

Հայ դպրոցի ընթացքը, որ մինչև անցեալ դպրոցական տարեվերջ կանոնաւոր կերպով յառաջ տարուած էր, շնորհիւ փորձառու Ուսուցչական Խորհուրդի մը ջանքերուն, արձակուրդէն յետոյ կարելի չեղաւ կազմակերպել բատ առաջնոյն համաճարակ հիւանդութեան պատճառաւ: Միենոյն պատճառաւ Եկեղեցին ալ փակ մնաց երկար ատեն, որուն բարոյական և նիւթական վնասները յայտնի են բոլորիս ալ: Սակայն ուրախ ենք դարձեալ յայտարարելու, թէ մեր տարեկան գործունէութեանց հաշուեկշիռը մխիթարական է: Եւ Եկեղեցւոյ շինութենէն մնացած տոկոսաւոր պարտուց ալ հաշիւ հազար տոլար վճարելէ զատ, փոքրիկ գումար մըն ալ պատրաստ դրամ կայ սնտուկը:

Ընդհանուր մուտք եղած է $7682·28, իսկ ընդհանուր ելքն է $5566·78: Եկեղեցական ծախուց առօրեայ մատակարարութենէն զատ, երեք բացառիկ գործունէութիւններ ունեցած ենք: Առաջինն է ժողովիդ կողմանէ մեզ տրուած իրաւասութեան համաձայն, երաժիշտ Տիար Գ. Փրոֆֆ-Գալֆաեանի պաշտօնի կոչումը: Երկրորդ՝ ծախած ենք Լէֆ փողոցի վրայ գտնուած Եկեղեցւոյս սեփական գետինը 2·300 տոլարի: Եւ Երրորդ՝ գնած ենք Եկեղեցւոյս կից տանը տեղը 3400 տոլարի:

Եկեղեցին քանի մը մը կենսական պէտքեր ունի, որոնք ժողովիդ լուրջ ուշադրութեան և գործնական ջանքերուն կը կարօտին: Իր արտաքին երեւոյթին համաձայն, ներքին կերպով ալ վայել, լուրջ, առողջապահիկ և հանգստաւէտ ընելու համար, պէտք է որ ջերմոց զետեղուի, նստարանները բազմոցներով, իսկ յատակը կապերտներով ծածկուին: Եւ պարտքէ ու տոկոսէ ալ բոլորովին ազատ կացուցանելու համար, բոլորիս առատաձեռնութեան պէտք ունի:

Հոգաբարձութիւնս ժողովիդ կողմանէ իրեն տրուած վստահութեան համար հրապարակաւ կը յայտնէ իր խորին շնորհակալութիւնը. ինչպէս նաև Եկեղեցւոյս Հովանաւորութեան տակ գտնուած բոլոր կազմակերպութեանց և ժողովուրդին, որոնք որ և իցէ կերպով օգնած են իրեն:

Գոհունակութեամբ կ'արձանագրենք նաև, որ Հոգաբարձութիւնս Եկեղեցւոյս արժանաւոր հովիւ Տ. Վարդան Ծ. Վարդապետ Գասպարեանի հետ բատ առաջնոյն խաղաղ և համերաշխ գործակցութեամբ բոլորած է անցնող տարին:

Ատենապետ — ՅԱՐ. ՌԸՍՏԻԿԵԱՆ
Ատենադպիր — ՄԻՆԱՍ ԽՕԼԼԻԿԵԱՆ

---

## ՔԻՉ ՄԸ ԲԱՐԻ ՆԱԽԱՆՁ

Խմբագիր Հայր Սուրբ,

«Էջմիածին»ի ներկայ տարւոյ առաջին թիւէն ուրախութեամբ տեղեկացանք, որ տարի մը եւս ապահովուած է անոր հրատարակութիւնը: Ինձ հետ շատեր կը փափաքէին և կ'ակնկալէին, որ հետզհետէ ընդարձակուէր այդպիսի թերթի մը ծաւալը, որուն կարեւորութիւնը ոչ ոք կրնայ ժխտել Ամերիկահայ եկեղեցական կեանքին մէջ: Երանի՜ թէ գէթ եկեղեցականներէն յայտնի դէմքեր իրենց բարոյական օժանդակութենէն մաս մըն ալ անոր նուիրէին:

Բայց ցաւալի է, որ միակ խմբագրի մը աշխատութեան թողուած է ան: Հայուն եկեղեցասէրի ծանօթ համբաւին դէմ մեղանչում մըն է ասիկա: Տասնեակներ տարիներ առաջ «Կոչնակ» թերթին ծնունդ կուտար, Բէմպրիճի մէջ, միակ պատուելի մը որ միմիօկրաֆի միջոցաւ փոքրիկ թերթիկներու վրայ տպագրելով անձամբ կը ցրուէր տուները: Այն ատեն դուրսէն դիտողի մը համար խիստ ծիծաղելի կը թուէր այդ տեսակ աշխատութիւն մը: Ու երբ օր մը մօտենալով հատ մըն ալ ինձ տալ ուզեց, շնորհակալութեամբ ընդունելով քաջալերեցի զինքը: Այսօր կը տեսնենք թէ ինչ նախանձելի դիրքի հասած է այնքան տկար ջանքերով սկսուած փոքրիկն «Կոչնակ»:

Այս երկրին մէջ կրօնաթերթ մը ունենալ, անյետաձգելի պահանջ մըն է, որուն ծնունդ տալը շնորհաւորելի է:

Այս պատուաւոր ձեռնարկին ի տես, քիչ մը բարի նախանձով շարժելու են մեր Եկեղեցւոյ զաւակները, մեր հոգեորականները, մեր պատուարժան Հոգաբարձուները, զօրացնելու և տարածելու համար «Էջմիածին»ը, որուն անունը միայն այնքան ներշնչող է, իսկ բովանդակութիւնը պատիւ կը բերէ անոր միակ աշխատաւորին:

Քիչ մը բարի նախանձ ունենանք:

Լօս Անճէլըս (Ուրարակիր) Ա. ՄԿՐՏԻՉԵԱՆ



## ԿԻՐԱԿՆՕՐԵԱՑ ԵՒ ՀԱՑ ԴՊՐՈՑՆԵՐ

Այս երկու դպրոցները վերաբացուած են, իրենց սովորական ժամանակով ու ծրագրով:

Հայ դպրոցը բաց է Երկուշաբթի, Չորեքշաբթի և Ուրբաթ օրեր, Ամերիկեան դպրոցներէն յետոյ:

Կիրակի առաւօտները ղրկեցէք ձեր զաւակները Կիրակնօրեայ դպրոց, որ սորվին ու ճանչնան Հայ կրօնն ու Հայ Եկեղեցին:

Շաբթու մէջ որոշեալ օրերը ղրկեցէք զանոնք Հայ դպրոց որ սորվին Հայ լեզուն ու Հայ գիրը

Դիւան Ընդհանուր ժողովոյ Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ.

Հ. Էկինեան՝ Ատենապետ

Բ. Սարգիսեան՝ Ատենադպիր:

* * *

Կազմութիւն Հոգաբարձութեան

Գ. Գույումճեան՝ Ատենապետ,

Յր. Թըստիկեան՝ Ատենադպիր

Յ. Էլմասեան՝ Գանձապահ:

Խորհրդականք

Մ. Խոլլիկեան, Մ. Գորգմազեան Գ. Շահպազեան և Մ. Չաթոյեան:

## ՖԱՒԼԸՐԻ ԵԿԵՂԵՑԻՆ

Ֆաւլըրի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ Ընդհանուր ժողովը տեղի ունեցաւ ամսոյս 9-ին, նոյն Եկեղեցւոյ մէջ, որուն կը նախագահէր Արժ. Տ. Մելքիսեդեկ Քահ. Տէր Մկրտիչեան:

Նոյն ժողովին մէջ խմիջի այլոց ընդունուեցաւ Ֆրէզնոյի Հայ դպրոցի ծրագիրը տեղւոյն դպրոցին համար որ բաց պիտի ըլլայ Շաբաթ օրերը սովորական ժամանակին:

Ընտրութիւնք հետեւեալ արդիւնքը ունեցան.

Դիւան Ընդհանուր ժողովոյ,

Ա. Ահարոնեան՝ Ատենապետ,

Ն. Շահպազեան՝ Ատենադպիր,

Հոգաբարձութիւն

Մ. Մերիկեան, Գ. Մանուկեան, Ա. Խայաճանեան,, Գ. Սիմոնեան և Ա. Ճանիկեան:

Ա. Շահպազլեանի երախան Յովհաննէս

Նշանախօսութիւն

Յարութիւն Մաստաչեան և Արաքսի Սրեան

Ամուսնութիւն

Արամ Զայիլեան և Արաքսի Զուլճեան

Մկրտութիւն

Կ. Մակարեանի երախան Անդրանիկ

Ն. Պիճանեանի երախան Տիգրան

Խ. Եըլտըզեանի եարխան Եղիա

Յ. Իգնոյեանի երախան Եղիսաբեթ

## ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈՎՈՒԻՆ

* * *

Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ:

Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ:

Երբ գիտես թէ խռովեալներ կան:

Երբ գիտես թէ նորեկ կայ:

Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ:

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—

--Թէլէֆօն 4138- W—